Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 13 ՀՈՒԼԻՍ 1950

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78։

---

# ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐԸ ԵՎ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Այս տարվա հունիսի 30-ից, ՍՍՌՄ-ում սկսվել է խաղաղության կողմնակիցների համաշխարհային կոնգրեսի Մշտական կոմիտեի Ստոկհոլմի՝ ատոմային զենքն արգելելու և այդ զենքը առաջինը գործադրող կառավարությանը հանցավոր հայտարարելու վերաբերյալ Կոչի տակ ստորագրություններ հավաքելու կամպանիան։

Ստորագրելով այդ Կոչի տակ, սովետական ժողովուրդը կրկին անգամ իր հզոր ձայնն է բարձրացնում հանուն խաղաղության՝ ամբողջ աշխարհում։ Նա արտահայտում է իր անհողդողդ կամքն ու ձգտումը՝ պաշտպանելու սոցիալիզմի, դեմոկրատիայի և խաղաղության գործը։ Իրենց ստորագրությունը դնելով այդ Կոչի տակ՝ սովետական միլիոնավոր մարդիկ կրկին անգամ ձայն են տալիս Սովետական կառավարության ստալին-

յան խաղաղասիրական արտաքին քաղաքականության օգտին։

Մեծ խնդիրներ են դրված մեր ագիտատորների առաջ՝ Ստոկհոլմի Կոչի տակ ստորագրություններ հավաքելու և նոր պատերազմի անգլո-ամերիկյան հրձիգների դեմ սովետական ժողովրդի ծավալած հուժկու պայքարի կապակցությամբ։

Ամենուրեք՝ արդյունաբերական ձեռնարկություններում, կոլխոզային դաշտերում, հիմնարկներում ագիտատորները պետք է լայն մասսայական-բացատրական աշխատանք ծավալեն բնակչության մեջ, սիստեմատիկաբար զրույցներ ու կոլեկտիվ ընթերցանություններ կազմակերպեն՝ նվիրված միջազգային դրության հարցերին և ամբողջ աշխարհում խաղաղությունն ապահովելու համար Սովետական Միության գլխավորությամբ պրոգրեսիվ մարդկության կողմից մղվող հուժկու պայքարին։

Ագիտատորները իրենց ամենօրյա ընթերցանությունների ու զրույցների ընթացքում աշխատավորներին պետք է պարզաբանեն, որ Սովետական կառավարության վարած խաղաղասիրական քաղաքականությունը բխում է մեր սովետական պետության բուն



էությունից։ Նրանք պետք է ցույց տան, թե ինչպես Սովետական Միությունն իր գոյության ամբողջ ընթացքում անցեկացրել խաղաղասիրական լենինյան-ստալինյան քաղաքականություն, հետևողականորեն մերկացնելով պատերազմի բոլոր և ամեն տեսակի հրձիգներին, ինչպես եռանդուն պայքար է մղել հանուն կայուն խաղաղության, ժողովուրդների անկախության և նրանց խաղաղ համագործակցության։

Երկրորդ համաշխարհային պատերազմի նախօրյակին միայն Սովետական Միությունն էր, որ հետևողականորեն մերկացրնում էր ֆաշիստական ագրեսորների և նրանց անգլո-ամերիկյան հովանավորների ագրեսիվ քաղաքականությունը, որոնք պատերազմի սպանդի մեջ նետեցին ամբողջ աշխարհը։

Դեռ Հայրենական Մեծ պատերազմի տարիներին ընկեր Ստալինը ասում էր, որ «Խնդիրը ո՛չ միայն պատերազմը շահելն է, այլև նոր ագրեսիայի և նոր պատերազմի առաջացումն անհնարին դարձնելը եթե ոչ ընդմիշտ, ապա գոնե տևական ժամանակամիջոցի ընթացքում»։

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, ի պատասխան անգլո-ամերիկյան իմպերիալիստների ոտնձգությունների, ամբողջ աշխարհում սկսվել է հզոր շարժում հանուն խաղաղության, շարժում, որ ընդգրկել է ամբողջ պրոգրեսիվ մարդկությանը։

Խոսելով խաղաղության օգտին տեղի ունեցող ժամանակակից շարժման բնույթի մասին, ագիտատորները պետք է պարզաբանեն իրենց ունկնդիրներին, որ պատմության մեջ խաղաղության համար դեռևս նման կազմակերպված, միաձույլ ու մասսայական շարժում չի եղել։ Այդ շարժման ուժը, նախ և առաջ այն է, որ այն գլխավորում են Սովետական Միությունը և կոմունիստական պարտիան։

ՍՍՌՄ-ում ստորագրությունների հավաքումը Ստոկհոլմի Կոչի տակ՝ Սովետական կառավարության խաղաղասիրական քաղաքականության մի նոր վառ ցույց է, սովետական ժողովրդի կողմից այդ քաղաքականությունը միահամուռ կերպով պաշտպանելու ցույց։

Հունիսի 30-ից մինչև հուլիսի 10-ն ընկած ժամանակամիջոցում Ստոկհոլմի Կոչի տակ ստորագրել է 96.360.866 սովետական քա-



ղաքացի։ Կոչը մեծ խանդավառությամբ են ստորագրում նաև Հայաստանի աշխատավորները։ Հայաստանի համարյա ամբողջ հասակավոր բնակչությունն արդեն ստորագրել է Կոչի տակ։

Ագիտատորները աշխատավորներին պետք է պարզաբանեն, որ ստորագրությունների հավաքումը մեր երկրում տեղի է ունենում այնպիսի մի ժամանակաշրջանում, երբ ամերիկյան իմպերիալիստներն անցել են ուղղակի պատերազմի հրահրմանը։

Իրենց բոցավառ, ճշմարիտ, բոլշևիկյան խոսքով ագիտատորները բոլոր աշխատավորների առաջ պետք է մերկացնեն անգլո-ամերիկյան իմպերիալիստների հակամարդկային հանցավոր քաղաքականությունը, որոնց հարկավոր է նոր պատերազմը նոր հարստություններ ձեռք բերելու, մարդկությանը նորից թշվառության մեջ նետելու համար։

Անգլո-ամերիկյան իմպերիալիստները երկրորդ համաշխարհային պատերազմի ավարտումից անմիջապես հետո ձեռնարկեցին նոր պատերազմի նախապատրաստմանը։ Նրանք կազմեցին ագրեսիվ բլոկներ ու դաշինքներ, ինչպես հյուսիս-ատլանտյան

պակտը և այլն։ Նրանք դեմոկրատական շարժումը ճնշելու համար ինտերվենցիա կազմակերպեցին առանձին երկրներում, ինչպես, օրինակ՝ Հունաստանում, նրանք օգնում են բոլոր երկրների ռեակցիոններնե-րին՝ դեմոկրատիայի և սոցիալիզմի դեմ նրանց մղած պայքարում։ Սակայն անգլո-ամերիկյան ռեակցիոներների փորձերը կրախի են դատապարտված։

Ներկայումս ամերիկյան իմպերիալիստները ագրեսիվ բլոկներ ստեղծելու քաղաքականությունից, այսպես կոչված «սառը պատերազմի» քաղաքականությունից անցել են ուղղակի ագրեսիայի։ Նրանք պատերազմ են ծավալել Կորեայում, փորձելով ստրկացնել կորեական ժողովրդին։ Բայց Կորեայի աշխատավորները արժանի հակահարված են տալիս ամերիկյան զավթիչներին։ Ամբողջ աշխարհում ներկայումս ցասման ու զայրույթի բողոք է բարձրացել Կորեայում կատարվող ամերիկյան ագրեսիայի դեմ։

Զրույցներ անցկացնելով խաղաղության համար մղվող պայքարի հարցերի շուրջը, ագիտատորներն իրենց զրույցները պետք է սերտորեն զուգակցեն այն խնդիրների հետ,



որոնք կանգնած են սովետական ժողովրդի առաջ՝ մեր երկրի ռազմա-տնտեսական հզորությունն է՛լ ավելի ամրացնելու համար։ Սովետական ժողովուրդը իր խաղաղ ստեղծագործ աշխատանքը, իր ջանքերը գործադրում է մեր երկրի տնտեսական ու կուլտուրական հետագա վերելքի համար, մեր մարդկանց խաղաղ, երջանիկ և ունևոր կյանքի հետագա բարգավաճման համար։

Պատերազմի անգլո-ամերիկյան հրձիգների ոտնձգություններին մեր երկրի աշխատավորները պատասխանում են աշխատանքային նորանոր սխրագործություններով և արտադրական նորանոր նվաճումներով։

Աշխատավորների հետ անցկացվող զրույցների ընթացքում ագիտատորները իրենց ցեխի, բրիգադայի, օղակի կոնկրետ օրինակով պետք է ցույց տան աշխատավորների այն ավանդը, որ նրանք մտցնում են խաղաղության, մեր երկրի ռազմա-տնտեսական հզորությունն ամրապնդելու գործի մեջ։ Ագիտատորը պետք է ցույց տա, որ սովետական յուրաքանչյուր մարդու ազնիվ աշխատանքը պատերազմի հրձիգներին հասցվող մի նոր հարված է։ Ագիտատորը

արտադրության առաջավորների օրինակով պետք է առաջ մղի հետ մնացողներին, օգնի մոբիլիզացնելու իր կոլեկտիվի ուժերը՝ նրա առաջ դրված խնդիրները հաջողությամբ կատարելու համար։

Ագիտացիոն աշխատանքի ընթացքում ագիտատորը պետք է օգտագործի քաղաքական-մասսայական աշխատանքի բոլոր ձևերն ու մեթոդները։

Պարզաբանելով խաղաղության համար մղվող պայքարի հարցերը, ագիտատորը դրա համար մեծ քանակությամբ նյութեր կգտնի մեր պարբերական մամուլում, ՍՍՌՄ Գերագույն Սովետի վերջերս տեղի ունեցած սեսիայի նյութերում։ Ագիտատորների խընդիրն է հմտորեն օգտագործել այդ նյութերը, մասնավորապես պետական բյուջեի վերաբերյալ ՍՍՌՄ ֆինանսների մինիստրի զեկուցումը, այդ հարցի առթիվ սեսիայում դեպուտատների ունեցած ելույթները, դեպուտատ Վ. Վ. Կուզնեցովի հաղորդումը և Խաղաղության կողմնակիցների համաշխարհային կոնգրեսի Մշտական կոմիտեի Ստոկհոլմի Կոչի կապակցությամբ ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիայի Հայտարարությունը և այլն։



Խաղաղության համար մղվող պայքարի և միջազգային դրության վերաբերյալ անցկացվող զրույցների ընթացքում անհրաժեշտ է ամեն կերպ օգտագործել ցուցադրական ագիտացիայի բոլոր միջոցները, մասնավորապես աշխարհագրական քարտեզը, առանց որի զրույցը չի կարող հարկ եղած էֆեկտն ունենալ։

Իրենց զրույցների ընթացքում ագիտատորները աշխատավորներին պետք է պարզաբանեն, որ խաղաղության հզոր լագերը, որին գլխավորում է Սովետական Միությունը, անպարտելի է, որ սոցիալիզմի, դեմոկրատիայի ու խաղաղության ուժերը աճում և հաղթանակում են։

Խաղաղության գործի համար ագիտացիա անելը՝ մեր ագիտատորների մարտական ու պատվավոր խնդիրն է։

## ՍՍՌՄ-Ը ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՀՈՒՍԱԼԻ ՓԱՐՈՍՆ Է ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՐՀՈՒՄ

ՍՍՌՄ 3-րդ գումարման Գերագույն Սովետի վերջերս կայացած առաջին սեսիան Միության Սովետի և Ազգությունների Սովետի համատեղ նիստում ընդունեց Հայտարարություն այն մասին, որ լիովին աջակցում և միանում է խաղաղության կողմնակիցների համաշխարհային կոնգրեսի Մշտական կոմիտեի Ստոկհոլմի Կոչին, որով արգելվում է ատոմային զենքի կիրառումը և պատերազմի հանցագործ է հայտարարվում այն կառավարությանը, որը առաջինը կկիրառի այդ զենքը։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի այդ պատմական հայտարարությունը լիովին համապատասխանում է սովետական երկրի միլիոնավոր աշխատավորների և ամբողջ առաջավոր մարդկության խաղաղասիրական ձգտումներին։

Միլիոնավոր սովետական մարդիկ, որոնք կառուցում են իրենց սոցիալիստական պետությունը, ամբողջ աշխարհում միլիոնավոր



հասարակ մարդիկ, որոնք ստեղծում են նյութական և կուլտուրական արժեքներ, այսօր իրենց ձայնն են բարձրացնում անգլո-ամերիկյան ռեակցիայի մութ ուժերի դեմ, որոնք ձգտում են աշխարհը նետել նոր պատերազմի արյունալի սպանդի մեջ և հարստանալ ժողովուրդների արցունքների ու տառապանքների գնով։

Ամբողջ աշխարհում խաղաղության համար՝ պատմության մեջ չտեսնված այդ հզոր միաձույլ շարժման գլուխ է կանգնած մեր սովետական երկիրը, որին ղեկավարում է մեծ Ստալինը, հանձին նրան բոլոր երկրների ժողովուրդները տեսնում են ամբողջ աշխարհում խաղաղության պաշտպանին և մեծ դրոշակակրին։

Իր գոյության ամբողջ պատմության ընթացքում մեր սովետական պետությունը միշտ հանդիսացել և հանդիսանում է խաղաղության ու դեմոկրատիայի պատվարը։ Կիրառելով բոլոր խաղաղասիրական երկրների հետ համագործակցելու հետևողական քաղաքականություն, պաշտպանելով խաղաղության և պրոգրեսի գործը, մեր երկիրը անխոնջ կերպով մերկացրել է պատերազմի բոլոր և ամեն տեսակ հրձիգների մեքենայությունները, մարդկության կողմից մշակված

նյութական և հոգևոր արժեքները հերոսաբար պաշտպանելով իմպերիալիստական բարբարոսների կողմից ոչնչացվելու սպառնալիքից։

Նախապատերազմյան տարիներին, երկրորդ համաշխարհային պատերազմի նախօրյակին, երբ ֆաշիստական խավարամոլները սպառնում էին ամբողջ երկրագունդը արյունով ողողել և համաշխարհային քաղաքակրթությունը խեղդել աշխատավոր ժողովրդի արյան մեջ, Սովետական Միությունը իր հզոր ձայնը բարձրացրեց ի պաշտպանություն խաղաղության, ի պաշտպանություն մարդկության, ի պաշտպանություն մարդկանց աշխատանքի և երջանկության։

Բայց ֆաշիզմի գործակիցներ՝ անգլո-ամերիկյան իմպերիալիստները այն ժամանակ օգնեցին ագրեսիայի իրագործմանը և աշխարհը նետեցին երկրորդ համաշխարհային պատերազմի անդունդը։

Անգլո-ամերիկյան իմպերիալիստներին այժմ հարկավոր է նոր պատերազմ, որպեսզի նորից ավելացնեն իրենց հարստությունները։

Ուոլլ-Ստրիտի և Սիտիի այդ թափթփուկները, որոնք կորցրել են մարդկային ամեն մի կերպարանք և տոգորված են միայն հարստանալու ցանկությամբ և գազանային



ատելություն են տածում առաջավոր և պրոգրեսիվ ամեն ինչի նկատմամբ, այժմ կանգնել են նոր պատերազմի հրահրման ուղու վրա։

Անգլո-ամերիկյան իմպերիալիստների ագրեսիվ քաղաքականությունը երկրորդ համաշխարհային պատերազմից հետո հանրահայտ է։ Սակայն այժմ այդ քաղաքականությունը թևակոխել է մի նոր փուլ։ «Սառը պատերազմի» քաղաքականությունից, դիվանագիտական մութ կոմբինացիաների քաղաքականությունից, որոնք կիրառվում էին դեսպանությունների առանձնատներում, ագրեսիվ ռազմական դաշինքների ու բլոկների ստեղծման քաղաքականությունից ամերիկյան իմպերիալիստները անցել են բացահայտ ագրեսիայի, պատերազմի ուղղակի հրահրման։

Համաշխարհային տիրապետության ամերիկյան հավակնորդների հանցագործ պլանները իրենց արյունալի մարմնավորումն են ստացել Կորեայում։ Ոտնահարելով միջազգային բարոյականության բոլոր նորմաները, ամերիկյան իմպերիալիստները Կորեայում հրահրել են նոր պատերազմ, ձգտելով կորեական ժողովրդին զրկել անկախությունից, Կորեան դարձնել ասիական մայր-ցամաքում

իմպերիալիզմի պլացդարմ՝ Ասիայում դեմոկրատիայի և պրոգրեսիվ ուժերի դեմ պայքարելու համար։

Կորեական ժողովուրդը հարկ եղած հակահարված տվեց ամերիկյան չափը կորցրած զավթիչներին և նրանց կորեական սպասարկուներին, Լի Սին Մանի ավանտյուրիստական կլիկին։

Բոլոր երկրների ժողովուրդները այսօր իրենց հզոր ձայնն են բարձրացնում ի պաշտպանություն կորեական ժողովրդի։ Ձեռքերդ հեռու Կորեայից,— այս է ամբողջ աշխարհի բոլոր ազնիվ և համարձակ մարդկանց միահամուռ կոչը։

Նոր պատերազմի սանձարձակ հրահրման խրախուսման մեջ, ռասիզմի և մարդատյացության մոլի պրոպագանդայի իրադրության մեջ, ամբողջ աշխարհում ատոմային անզուսպ շանտաժի պայմաններում Սովետական Միությունը վստահորեն կիրառում է իր խաղաղության քաղաքականությունը։ Սովետական մարդիկ զբաղված են խաղաղ աշխատանքով։ Մեր սոցիալիստական դաշտերում, արդյունաբերական ձեռնարկություններում, մեր գիտնականների կաբինետներում, մեր նկարիչների արվեստանոցներում եռում է սովետական մարդկանց խաղաղ ստեղծագործական աշխատանքը, որոնք հաս-



տատ կերպով հավատում են իրենց լուսավոր ապագային և վստահորեն կառուցում են իրենց երջանիկ ներկան։

Սովետական Միության խաղաղության քաղաքականության լավագույն ապացույցը հանդիսանում է ՍՍՌՄ 1950 թվականի Պետական բյուջեի Օրենքը, որը ընդունվեց ՍՍՌՄ Գերագույն Սովետի առաջին սեսիայի կողմից։ Սովետական պետության բյուջեի երկու երրորդը հատկացվում է մեր երկրի ժողովրդական տնտեսության և կուլտուրայի կարիքներին և միայն 18,5 տոկոսը՝ պաշտպանության կարիքներին, այն ժամանակ երբ ԱՄՆ-ի պետական բյուջեի 76 տոկոսը հատկացվում է ռազմական կարիքների համար։ Սովետական պետության խաղաղասիրական քաղաքականության նոր ապացույց է հանդիսանում նաև ՍՍՌՄ Գերագույն Սովետի առաջին սեսիայի հայտարարությունը, որով պատրաստակամություն է հայտնվում համագործակցելու մյուս պետությունների օրենսդրական օրգանների հետ Խաղաղության կողմնակիցների համաշխարհային կոնգրեսի Մշտական կոմիտեի առաջարկները իրագործելու համար անհրաժեշտ միջոցառումներ մշակելու ու կիրառելու ասպարեզում։

Այս առթիվ ՍՍՌՄ Գերագույն Սովետի Հայտարարության մեջ ասված է. «ՍՍՌՄ Գերագույն Սովետը համոզմունք է հայտնում, որ խաղաղության կողմնակիցների շարժումը և ամենից առաջ խաղաղության կողմնակիցների համաշխարհային կոնգրեսի Մշտական կոմիտեի Ստոկհոլմի Կոչը միահամուռ աջակցություն կգտնի ամբողջ սովետական ժողովրդի կողմից»։

Սովետական ժողովուրդը միահամուռ կերպով ողջունեց իր օրենսդրական գերագույն օրգանի այդ Հայտարարությունը։ Այդ Հայտարարության հետ սովետական ժողովրդի համերաշխության լավագույն արտահայտությունը հանդիսանում է Ստոկհոլմի Կոչի տակ ստորագրություններ հավաքելու կամպանիայի ընթացքը։ Մեր անծայրածիր երկրի բոլոր կողմերում, Վլադիվոստոկից մինչև Կալինինգրադ ծավալվել է ստորագրությունների հավաքման հզոր կամպանիա, որը ցուցադրում է ամբողջ աշխարհում խաղաղությունը պահպանելու սովետական ժողովրդի հզոր և անպարտելի կամքը։ Միայն առաջին 10 օրում 96,3 միլիոն սովետական մարդիկ ստորագրեցին այդ կոչի տակ։

Հայ ժողովուրդը հսկայական ոգևորությամբ դիմավորեց ՍՍՌՄ Գերագույն Սովե-



տի Հայտարարությունը։ Հայաստանի աշխատավորները քաղաքական և աշխատանքային նոր խանդավառության պայմաններում միացան Ստոկհոլմի Կոչի տակ ստորագրություններ հավաքելու կամպանիային։

Հայ ժողովուրդը վաղուց ի վեր եղել է և մնում է ամբողջ աշխարհում խաղաղության ակտիվ պաշտպան։ Հայ ժողովուրդը շատ տառապանքներ է կրել և իր կյանքում շատ պատերազմներ է տեսել։ Բոլոր երկրների իմպերիալիստները վաճառահանել են հայ ժողովրդի արյունը, հայ ժողովրդին դրել են ֆիզիկական ոչնչացման եզրին։

Առաջին համաշխարհային պատերազմը հայ ժողովրդի համար դարձավ ազգային աղետ։ Հայ ժողովուրդը կորցրեց մեկ միլիոն կյանք։ Թյուրքական դավթիչները արևմտյան իմպերիալիստների թելադրանքով շտապում էին հայ ժողովրդին բնաջինջ անել աշխարհի երեսից։

Հայաստանի աշխատավորները ծարավի էին խաղաղության։ Միայն սովետական իշխանության գաղափարը Հայաստանին բերեց խաղաղություն և ազգային վերածննդի հնարավորություն։

Ամբողջ Սովետական Միության եղբայրական ժողովուրդների հետ միասին, ռուս մեծ

ժողովրդի գլխավորությամբ հայ ժողովուրդը այժմ պայքարում է հանուն խաղաղության ամբողջ աշխարհում։

Մեր ռեսպուբլիկայում Ստոկհոլմի Կոչի տակ ստորագրությունների հավաքման կամպանիան անցնում է հսկայական հաջողությամբ։ Հունիսի 30-ից մինչև հուլիսի 7-ը ներառյալ, Հայաստանի ամբողջ մեծահասակ բնակչությունը իրենց ստորագրություններն դրել են այդ Կոչի տակ, ցուցադրելով սովետական ժողովրդի անխախտ բարոյա-քաղաքական միասնությունը խաղաղության և սոցիալիզմի համար մղվող պայքարում։

Ստորագրելով Ստոկհոլմի Կոչը, Հայաստանի աշխատավորները արտահայտում են ոչ միայն իրենց անհողդողդ կամքը խաղաղության համար մղվող պայքարում, այլև իրենց պատրաստակամությունը ծառայելու մեր մեծ Հայրենիքի հզորության հետագա ամրապնդմանը, նրա տնտեսական և կուլտուրական նոր ծաղկմանը։

Մեր բազմազգ սովետական ժողովուրդը պատերազմի հրձիգներին կպատասխանի սոցիալիստական շինարարության բոլոր ճակատներում նորանոր հաջողություններով, աշխատանքի արտադրողականության հետա-



գա բարձրացմամբ և նոր հերոսական աշխատանքային սխրագործություններով ի փառս մեր մեծ Հայրենիքի։

Աճում և ընդլայնվում է խաղաղության լագերը։

Չնայած նոր պատերազմի հրձիգների մեքենայություններին, այդ շարժումը կաճի և կզարգանա, որովհետև նա անհաղթահարելի է, ինչպես, որ անհաղթահարելի է ժողովուրդների կամքը։

Դեռ 1948 թվականի հոկտեմբերին «Պրավդա» թերթի թղթակցի հարցերին տրված իր պատասխաններում ընկեր Ստալինը ասել է. «Չափազանց կենդանի են ժողովուրդների հիշողության մեջ վերջին պատերազմի սարսափները և չափազանց մեծ են խաղաղության կողմնակից հասարակական ուժերը, որպեսզի ագրեսիայի գծով Չերչիլի աշակերտները կարողանային դրանք հաղթահարել և շուռ տալ նոր պատերազմի կողմը»։

Այն ժամանակվանից ավելի անցել է երկու տարի և իրադարձությունների ընթացքը լիովին հաստատեց ընկեր Ստալինի մարգարեական խոսքերը։

Խաղաղության համար ամբողջ աշխար-

հում ծավալված շարժումը աճում և հաղթանակում է։

Խաղաղության հաղթանակի գրավականը հանդիսանում է այն, որ նրան կողմնակից է ամբողջ առաջավոր մարդկությունը։

Խաղաղության գրավական հանդիսանում է այն, որ խաղաղության համար ծավալված շարժման գլուխ է կանգնած մեր հզոր Հայրենիքը, ամբողջ աշխարհի բոլոր ժողովուրդների երջանկության համար փորձված մարտնչողը, ամբողջ աշխարհում դեմոկրատիայի և սոցիալիզմի հուսալի հենարանը։

Խաղաղության հաղթանակի գրավական հանդիսանում է այն, որ խաղաղության համար սկսված շարժումը ղեկավարում է ամբողջ պրոգրեսիվ մարդկության իմաստուն առաջնորդ մեծ ՍՏԱԼԻՆԸ։

*ՄԱՐՏԻՐՈՍ ՍԱՐՅԱՆ*

(Խաղաղության պաշտպանության Սովետական կոմիտեին աջակցող ռեսպուբլիկական հանձնաժողովի նախագահ)

---

# ԼԱՅՆՈՐԵՆ ԾԱՎԱԼԵՆՔ ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻ ԿՈԼԽՈԶՆԵՐԻ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ

Մեր ռեսպուբլիկայի բազմաթիվ կոլխոզներ և ամբողջ շրջաններ սոցիալիստական մրցության մեջ են գտնվում եղբայրական Ադրբեջանի և Վրաստանի կոլխոզների ու շրջանների հետ։ Այդ մրցությունն, իհարկե նոր չի սկսվել. դեռևս տասը տարի առաջ Հոկտեմբերյանի շրջանի Փոքր Շահրիար գյուղի և Վրացական ՍՍՌ Մախարաձեի շրջանի Նաթանեբի գյուղի կոլխոզները սոցիալիստական մրցության պայմանագիր կնքեցին և այդ օրվանից սկսած մինչև այժմ նրանք շարունակում են իրենց մրցությունը։

Հինգ տարուց ավելի է, ինչ իրար հարևան Նոյեմբերյանի շրջանի Ղալաչա գյուղի և Ադրբեջանական ՍՍՌ Ղազախի շրջանի Քամարլու գյուղի կոլխոզնիկները սոցիալիստական մրցության մեջ են միմյանց հետ։

Սոցիալիստական մրցությունը եղբայրական ռեսպուբլիկաների՝ Ադրբեջանի, Վրաստանի և Հայաստանի կոլխոզնիկների միջև

այս տարի ավելի մեծ ծավալ ստացավ։ Սոցիալիստական մրցության մեջ են մտել Արտաշատի և Նախիջևանի Ավտոնոմ ՍՍՌ Նորաշենի շրջանի կոլխոզները։ Մրցության մեջ են մտել Ջանգիբասարի շրջանի և Նախիջևանի Ավտոնոմ ՍՍՌ Նախիջևանի շրջանի կոլխոզները։

Վերջերս սոցիալիստական մրցության պայմանագրեր կնքեցին Ղուկասյանի շրջանի Ղուկասյան գյուղի և Վրացական ՍՍՌ Ախալքալակի շրջանի Հոկամ գյուղի, Իջևանի շրջանի Ուզունթալա գյուղի և Ղազախի շրջանի Մուսաքեո գյուղի կոլխոզները։

Եղբայրական ռեսպուբլիկաների կոլխոզների հետ մրցության մեջ են մտել նաև շատ ուրիշ կոլխոզներ՝ Արտաշատի, Ճամշադինի, Ամասիայի և այլ շրջաններից։

Հունիսի կեսերին սոցիալիստական մրցության պայմանագիր կնքեցին Հոկտեմբերյանի շրջանի և Ադրբեջանական ՍՍՌ Աղստաֆայի շրջանի կոլխոզները։ Երկու շրջանների ներկայացուցիչների հանդիպումը, որը տեղի ունեցավ Աղստաֆայում, վերածվեց բարեկամության ու եղբայրության ցույցի։ Հոկտեմբերյանցիները Աղստաֆայի կոլխոզներում հինգ օր շարունակ ծանոթացան նրանց նվաճումների, նրանց աշխատանքի



փորձի հետ։ Աղստաֆայի բամբակագործները խոստացել են յուրաքանչյուր հեկտարից 35 ցենտներ բամբակի բերք ստանալ։ Տասնյակ բրիգադներ և օղակներ պարտավորվել են բամբակի բերքատվությունը հասցնել 80—100 ցենտների։

Հանդիպումների ընթացքում Հոկտեմբերյանի և Աղստաֆայի կոլխոզնիկներն իրարից շատ բան սովորեցին։

Սոցիալիստական մրցությունը եղբայրական ռեսպուբլիկաների կոլխոզների միջև ընթանում է ստալինյան բարեկամության դրոշի ներքո և մեծ խթան է հանդիսանում եղբայրական ռեսպուբլիկաների ժողովուրդների միջև բարեկամությունն էլ ավելի ամրապնդելու, մեր կոլխոզային գյուղի աշխատավորներին ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու համար։

Սոցիալիստական մրցությունը եղբայրական ռեսպուբլիկաների կոլխոզների միջև մեծ խթան է հանդիսանում պարտիայի ու կառավարության կողմից առաջադրված խնդիրներն անշեղորեն իրագործելու համար։

Հաշվի առնելով այդ մրցության քաղաքական ու տնտեսական մեծագույն նշանակությունը, անհրաժեշտ է ամեն կերպ խրախու-

նել ու զարգացնել կոլխոզային գյուղի աշխատավորների այդ նախաձեռնությունը, բոլոր միջոցներով օգնել նրանց մրցությունն ավելի լայնորեն ծավալելու համար։ Այդ ուղղությամբ մեծ աշխատանք ունեն կատարելու մեր ագիտատորները։ Նրանք կոլխոզնիկներին պետք է պարզաբանեն եղբայրական ռեսպուբլիկաների կոլխոզների միջև ծավալված սոցիալիստական մրցության նշանակությունը, և պետք է ապահովեն կոլխոզային գյուղի բոլոր աշխատավորների ակտիվ մասնակցությունը այդ մրցության մեջ։ Կոլխոզնիկներին և կոլխոզնիկուհիներին պարբերաբար պետք է հաղորդել ոչ միայն մեր կոլխոզների ստանձնած պարտավորությունների և դրանց կատարման արդյունքների մասին, այլև այն մասին, թե ինչպես են աշխատում իրենց մրցակիցները՝ եղբայրական Ադրբեջանի և Վրաստանի կոլխոզները, ինչպիսի հաջողություններ ունեն նրանք։

Այդ տեսակետից ուշագրավ աշխատանք են կատարում Նոյեմբերյանի շրջանի Ղալաչա գյուղի պարտկազմակերպության ագիտատորները։ Ինչպես վերևում նշեցինք, Ղալաչայի կոլխոզը մրցության մեջ է գտնվում



Ղազախի շրջանի Քամարլու գյուղի կոլխոզի հետ։

Ագիտատորների ակտիվ մասնակցությամբ Ղալաչայի կոլխոզնիկներն իրենց մրցակցին ուղարկած նամակում գրում են.

«Մեր թանկագին բարեկամներ. ինտերնացիոնալ կապերի ամրապնդումը մեր կոլխոզնիկների միջև է՛լ ավելի մեծ հաջողություններ կբերի ձեզ և մեզ. մեր բարեկամությունը գնալով կամրապնդվի, որը գրավական է հանդիսանում սոցիալիստական մրցության մեջ նոր հաջողություններ ձեռք բերելու գործում»։

Ագիտատորներ Ս. Դավթյանը և Ս. Աղաջյանը կոլխոզնիկներին պարզաբանում են ստանձնած պարտավորությունները և պայքարի կոչում այդ պարտավորությունները օրինակելիորեն կատարելու համար։ Ամեն օր դաշտում աշխատանքի ընդմիջման պահին ագիտատորները կոլխոզնիկներին հաղորդում են, թե ինչպես են աշխատում իրենց մրցակիցները և ինչ պետք է անել ստանձնած պարտավորությունները լավագույն կերպով կատարելու համար։ Ագիտատորների աշխատանքը մեծ արդյունք է տվել։ Ղալաչայի կոլխոզը ագրոտեխնիկական լավագույն ժամկետում ս-

վարտեց 50 հեկտար ծխախոտի պլանտացիաների սածիլումը և կազմակերպված ձևով սկսեց մշակությունը։ Կոլխոզնիկները ժամանակին ավարտեցին աշնանացան արտերի սնուցումն ու փոցխումը, արտերը քաղհանեցին երկու անգամ, հաջողությամբ կատարեցին այգեփորը և պատրաստվեցին բերքահավաքին։

Ստալինյան բարեկամության դաշինքով միավորված, այդ բարեկամությունն է՛լ ավելի ամրապնդելու նշանաբանի տակ, սոցիալիստական մրցություն են ծավալում Նաթանների և Փոքր Շահրիար գյուղերի կոլխոզները։ Փոքր Շահրիարցիներին ուղարկած նամակի մեջ Նաթանների գյուղի կոլխոզնիկները գրում են.

«Գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելու համար մեր կոլխոզների միջև սոցիալիստական մրցությունը ծավալվել է դեռ մինչև Հայրենական Մեծ պատերազմը։ Պատերազմի դաժան տարիներին եղբայրական ռեսպուբլիկաների կոլխոզների միջև մրցությունն է՛լ ավելի ամրապնդվեց ու զարգացավ, իսկ հետպատերազմյան տարիներին մեր կոլխոզներն է՛լ ավելի բարձրացրին սոցիալիստական մրցության դրոշը Ստալինյան նոր հնգամյակում մեր առջև



դրված խնդիրները հաջողությամբ լուծելու համար։

Մենք, Նաթանների գյուղի կոլխոզնիկներս ու կոլխոզնիկուհիներս մեր բոլոր ուժերը գործի ենք դնում ստանձնած պարտավորությունները հաջողությամբ կատարելու համար։

Խնդրում ենք ձեզ, մոտիկ ժամանակներս մեզ մոտ հյուր գալ և ծանոթանալ, թե մենք ինչպես ենք ապրում ու պայքարում թեյի և մերձարևադարձային այլ կուլտուրաների բարձր բերք ստանալու համար»։

Իրոք, մեծ են և ուշագրավ Նաթանների կոլխոզնիկների ձեռք բերած նվաճումները։ Ամեն տարի կոլխոզը պետությանն է հանձնում մոտ հազար տոննա թեյ, որից ստացած եկամուտը կազմում է մի քանի միլիոն ռուբլի։ Կոլխոզի շատ բրիգադաներ իրենց մշակած հողերից ստանում են մեկ միլիոնից ավելի եկամուտ։

Նաթանների կոլխոզնիկները ծրագրել են և իրենց գյուղը վերածում են ագրոքաղաքի։ Կանցնի մի քանի տարի, և կոլխոզային Նաթաններին կկերպարանափոխվի, կբարձրանան բազմաթիվ գեղեցիկ շենքեր, կոլխոզնիկները կապրեն ավելի երջանիկ կյանքով։

Բարեկամական ու գործարար մրցություն է ընթանում Իչևանի շրջանի Լալի գյուղի և

Ղաղախի շրջանի Չախմախլու գյուղի կոլխոզնիկների միջև։ Անցյալ տարի այդ գյուղերի կոլխոզնիկները միացյալ ուժերով կառուցեցին մեկ ջրանցք, որով ոռոգվում են մրցակից կոլխոզների հողերը։

Սոցիալիստական մրցությունն եղբայրական ռեսպուբլիկաների կոլխոզների միջև հետզհետե նոր թափ է ստանում։ Մրցության մեջ են մտնում նոր կոլխոզներ և նոր շրջաններ։ Մեր կոլխոզային գյուղի աշխատավորները մեծ ակտիվություն և հետաքրքրություն են հանդես բերում դեպի այդ մրցությունը. ամեն մի կոլխոզնիկ ձգտում է դառնալ այդ մրցության ակտիվ մասնակիցը։ Երբ Արտաշատի շրջանը մրցության մեջ մտավ Նորաշենի շրջանի հետ, այդ նույն օրերին մրցության մեջ մտան նաև շատ կոլխոզներ, բրիգադաներ և օղակներ, որը և վկայում է սոցիալիստական մրցության ծավալի, նրա մասսայական բնույթի մասին։ Հաճախ տեղի են ունենում փոխադարձ այցելություններ, պարտավորությունների կատարման փոխադարձ ստուգումներ, փորձի փոխանակություն։ Կոլխոզնիկների մեջ կատարվող քաղաքական-մասսայական աշխատանքի ընթացքում ագիտատորները պետք է նրանց հաղորդեն մրցության ընթացքի և



արդյունքների մասին, ցույց տան այն լավն ու դրականը, որ կա մրցակիցների մոտ։

Կոլխոզային պատի թերթերը ու բրիգադային խլրիկավկաները սիստեմատիկ կերպով պետք է լուսաբանեն եղբայրական ռեսպուբլիկաների կոլխոզների միջև ծավալվող մրցության ընթացքը։ Պարբերաբար զրույցներ և ընթերցանություններ պետք է կազմակերպել եղբայրական ռեսպուբլիկաների ձեռք բերած նվաճումների մասին, այն մասին, թե ինչպես են պայքարում մրցակից կոլխոզները բարձր բերք աճեցնելու, հարազատ պետության առջև ունեցած պարտավորությունները օրինակելի ձևով կատարելու համար։

Եղբայրական ռեսպուբլիկաների կոլխոզների մրցությունն ավելի լայն ծավալելով, մեր ագիտատորները մեծ օգնություն ցույց տված կլինեն կոլխոզնիկների և կոլխոզնիկուհիների կոմունիստական դաստիարակության գործին, մեծ օգնություն ցույց տված կլինեն մեր սոցիալիստական գյուղատնտեսության հետագա վերելքի գործին։

Ա. ՊԵՏՐՈՍՅԱՆ

# ՄԻԼԻՈՆԱՎՈՐ ՍՏՈՐԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

*Ամբողջ աշխարհում լայն կամպանիա է ծավալվում ատոմային զենքը արգելելու մասին Ստոկհոլմի Կոչի տակ ստորագրություններ հավաքելու ուղղությամբ։ Խաղաղության կողմնակից միլիոնավոր մարդիկների ստորագրությունները որպես անհաղ նախազգուշացում են հնչում պատերազմի հրձիգներին։*

*Ստորև մենք հաղորդում ենք, թե մի շարք երկրներում ինչպես է անցկացվում խաղաղության կողմնակիցների Համաշխարհային կոնգրեսի Մշտական կոմիտեի կոչի տակ ստորագրությունների հավաքումը։*

Սովետական Միությունում *խաղաղության կողմնակիցների համաշխարհային կոնգրեսի Մշտական կոմիտեի Ստոկհոլմի Կոչի տակ ստորագրել են 96 միլիոն 360 հազար 866 սովետական քաղաքացիներ։*

Ռումինիայում *հավաքված է ավելի քան 10 միլիոն ստորագրություն։*



Հունգարիայում *հավաքված է 7 միլիոնից ավելի ստորագրություն։*

Լեհաստանում *ատոմային զենքն արգելելու կոչի տակ ստորագրել են ավելի քան 15 միլիոն մարդ։*

Չեխոսլովակիայում *կոչի տակ ստորագրել են ավելի քան 9,5 միլիոն մարդ։*

Բուլղարիայում *խաղաղության կոչի տակ ստորագրել են 5 միլիոն 730 հազար մարդ։*

Չինաստանում *ամբողջ երկրով մեկ ծավալվել է խաղաղության պաշտպանության շարժումը։ Շանհայում, Տյանցզինում, Պեկինում, Ցինդաոյում և մյուս խոշոր քաղաքներում հարյուր հազարավոր ստորագրություններ է հավաքվել։ Վերջին տվյալների համաձայն ամբողջ Չինաստանում Ստոկհոլմի կոչի տակ ստորագրել են ավելի քան 27 միլիոն մարդ։*

Գերմանական Դեմոկրատական ռեսպուբլիկայում *արդեն հավաքվել է 17 միլիոնից ավելի ստորագրություն, իսկ Արևմտյան Գերմանիայում 2 միլիոնից ավելի ստորագրություն։*

Ալբանիայում *խաղաղության կողմնակիցների համաշխարհային կոնգրեսի Մշտական Կոմիտեի կոչի տակ ստորագրել են 400 հազար մարդ։*

Ֆրանսիայում *Սենայի դեպարտամենտում Մշտական կոմիտեի Կոչի տակ ստորագրել են ավելի քան մեկ միլիոն մարդ, Պա-դե-Կալե դեպարտամենտում՝ 250 հազարից ավելի մարդ։ Միայն Սենայի դեպարտամենտում ամեն օր իրենց ստորագրություններն են*

դնում մոտ 90 հազար մարդ։ Ամբողջ Ֆրանսիայում խաղաղության կոչի տակ ստորագրել են 5 միլիոն մարդ։

Ֆինլանդիայում ստորագրել են մոտ 300 հազար մարդ։

Կանադայում դեռևս մայիսի սկզբին հավաքվել էր 200 հազար ստորագրություն։

Ճապոնիայում միայն Օսակայի շրջանում Մշտական կոմիտեի կոչի տակ ստորագրել են ավելի քան 240 հազար 600 մարդ։ Մինչև օգոստոսի 6-ը— այսինքն ատոմային ռումբով Խիրոսիմայի ռմբակոծման տարեդարձը— նախատեսվում է երկրում հավաքել 7 միլիոն ստորագրություն։ Մինչև հիմա հավաքվել է 1 միլիոն 10 հազար ստորագրություն։

Անգլիայում ստորագրությունների հավաքումը անց է կացվում ամբողջ երկրում։ Արդեն տարածված է 250 հազար բլանկ խաղաղության համաանգլիական պետիցիայի ստորագրության համար։ Ստացվել են առաջին 4320 ստորագրությունները, որոնք հավաքվել էին Գլազգոյում, ավելի քան 1000 ստորագրություն է հավաքվել Իսլինգտոնում (Լոնդոն)։ Անգլիայի շատ քաղաքների գործարաններում ստեղծված են խաղաղության պաշտպանության տեղական կոմիտեներ։ Ամբողջ Անգլիայում հավաքվել է մոտ 600 հազար ստորագրություն։

ԱՄՆ-ում, չնայած սպառնալիքներին, տեռորին ու ռեպրեսիաներին, Մշտական կոմիտեի կոչը կենդանի



արձագանք է գտել աշխատավորական մասսաների և պրոգրեսիվ տարրերի շրջանում։ Կոչի տակ արդեն ստորագրել են երկրի մի շարք նշանավոր գործիչներ։ Խաղաղության պաշտպանության կանանց կոմիտեն Ֆիլադելֆիայում հավաքել է ավելի քան 10 հազար բյուլետեն, որոնք ստորագրվել են խաղաղության կողմնակից քաղաքացիների կողմից։ Չիկագոյում խաղաղության պաշտպանության կոմիտեն խնդիր է դրել հավաքել 100 հազար ստորագրություն։ Խաղաղության պաշտպանության ազգային պրոֆմիության կոնֆերենցիայի սեսիայի գործադիր կոմիտեն որոշել է մինչև հոկտեմբեր ամիսը հավաքել առնվազն մեկ միլիոն ստորագրություն։

ԱՄՆ-ում արդեն հավաքվել է մեկ միլիոն ստորագրություն։

Բրազիլիայում երիտասարդությունը օգնում է ատոմային զենքն արգելող կոչի տակ ստորագրությունների հավաքմանը։ Երիտասարդ տղաներն ու աղջիկները իրենց առջև նպատակ են դրել հավաքել ոչ պակաս քան 100 հազար ստորագրություն։

Կուբայում պրոֆմիությունների հազարավոր անդամներ և ինտելիգենցիայի ներկայացուցիչներ ստորագրություններ են հավաքում խաղաղության կոչի տակ։

Ավստրիայում ատոմային զենքն արգելելու կոչի տակ հավաքվել է ավելի քան կես միլիոն ստորագրություն։

# ԱՄԵՐԻԿՅԱՆ ԻՄՊԵՐԻԱԼԻՍՏՆԵՐԻ ԱԳՐԵՍԻԱՆ ԿՈՐԵԱՅՈՒՄ

(Համառոտ տեսություն)

*Վերջին իրադարձությունները Կորեայում ամբողջ ուժով մերկացնում են ամերիկյան իմպերիալիզմի գազանային դեմքը, որը ոչ մի միջոցի առաջ կանգ չի առնում, որպեսզի սանձազերծ անի նոր պատերազմը, սարկացնի ու ճնշի իրենց ազատության և անկախության համար պայքարող ժողովուրդներին։ Ամերիկայի Միացյալ Նահանգների կառավարությունը նոր պատերազմի ագրեսիայի նախապատրաստման քաղաքականությունից անցել է բացարձակ ագրեսիայի ակտերի, կանգնել է կորեական ժողովրդի ներքին գործերին բացահայտորեն միջամտելու, Կորեայում զինված ինտերվենցիայի ուղու վրա։ Դրանով իսկ, ամերիկյան իմպերիալիստները խախտեցին խաղաղությունը, ցույց տալով, որ նրանք հանդիսանում են խաղաղության ու դեմոկրատիայի ոխերիմ թշնամիները։*



*Կորեայի տերիտորիան հավասար է 220 հազ. քառ. կիլոմետրի, բնակչության թիվը կազմում է մոտ 30 միլիոն մարդ։ Ազգային կազմի տեսակետից Կորեան գերազանցապես բնակեցված է կորեացիներով (96,3 տոկոս)։ Երկրի ընդերքը հարուստ է օգտակար հանածոներով (քարածուխ, երկաթ, մագնեզիտ, գունավոր մետաղներ և այլն) և հիդրոռեսուրսներով։ Մշակվում է բրինձ, սոյա, բամբակ և գյուղատնտեսական այլ կուլտուրաներ։ Կորեան իր հարստություններով և Խաղաղ օվկիանոսում ունեցած իր ստրատեգիական դիրքով դեռևս վաղուց գրավել է ամերիկյան և ճապոնական զավթիչների ուշադրությունը։*

*Դեռ 1882 թվականին ամերիկացիները փաթաթեցին Կորեայի վզին անհավասար պայմանագիր։ Հետագայում նրանք գործարքի մեջ մտան ճապոնացիների հետ և «զիջեցին» նրանց Կորեան։ Ամերիկյան իմպերիալիստներն օգնեցին Ճապոնիային սարկացնելու Կորեան և 1910 թվականին որպես գաղութ կցելու ճապոնական կայսրությանը։*

*Բազմաչարչար կորեական ժողովուրդը, որ տասնյակ տարիներ ճնշվել ու հարստահարվել էր ճապոնական իմպերիալիզմի գարշապարի տակ, զրկվել իր ազգային ու պետա-*

կան անկախությունից և իր էկոնոմիկան ու կուլտուրան զարգացնելու հնարավորությունից, ազատագրվեց սովետական ժողովրդի օգնությամբ։

Մոտ հինգ տարի առաջ Սովետական Բանակը ջախջախելով ճապոնական իմպերիալիստներին, ազատագրեց կորեական ժողովրդին գաղութային լծից և ճանապարհ բաց արեց նրա վերածննդի, անկախ դեմոկրատական պետության ստեղծման համար։ Սակայն ճապոնական զորքերի ջախջախումից մեկ ամիս հետո, ամերիկյան զորքերը ափ իջան Կորեա և օկուպացրին երկրի հարավային մասը։ Դրա հետևանքով, Սովետական Բանակի կողմից ճապոնական իմպերիալիզմի լծից ազատագրված Հարավային Կորեայի ժողովուրդը նորից ընկավ օտարների, այս անգամ ամերիկյան իմպերիալիստների ճնշման տակ։ Արհեստականորեն երկիրը 38-րդ զուգահեռականով բաժանվեց երկու մասի՝ 38-րդ զուգահեռականից հյուսիս— Սովետական Միության պատասխանատվության գոտի և դեպի հարավ— ԱՄՆ-ի պատասխանատվության գոտի։

1945 թ. դեկտեմբերին Մոսկվայում կայացավ ՍՍՌՄ-ի, ԱՄՆ-ի և Մեծ Բրիտանիայի արտաքին գործերի մինիստրների խոր-



հրդակցություն՝ նվիրված կորեական պրոբլեմի լուծմանը։ Երեք մեծ տերությունները, որին հետագայում միացավ նաև Չինաստանը, պարտավորվեցին վերականգնել Կորեան որպես անկախ դեմոկրատական պետություն։ Բայց ԱՄՆ-ի ղեկավար շրջանները ձախողեցին հենց իրենց կողմից ընդունած Մոսկվայի խորհրդակցության որոշումները։

Անցած տարիներում Սովետական Միությունը անշեղորեն պաշտպանել է կորեական ժողովրդի իրավունքը՝ ստեղծելու կորեական միասնական անկախ դեմոկրատական պետություն, տնօրինելու իր հողի վրա իր կյանքն այնպես, ինչպես ինքն է ցանկանում։ 1947 թվականի սեպտեմբերին սովետական դելեգացիան Կորեայի վերաբերյալ սովետա-ամերիկյան համատեղ հանձնաժողովում առաջարկություն մտցրեց Կորեայից դուրս բերել օտարերկրյա բոլոր զորքերը և կորեացիներին հնարավորություն տալ կազմելու իրենց կառավարությունը։ ԱՄՆ-ի կառավարությունը ոչ միայն չհամաձայնվեց այդ առաջարկությանը, այլև անօրինական կերպով Կորեական հարցը տեղափոխեց Միավորված Ազգերի կազմակերպության Գլխավոր ասամբլեի պլենար նիստի քննությանը (1947 թ. սեպտեմբեր)։ ԱՄՆ-ի ճնշման տակ

Գլխավոր ասամբլեի պլենար նիստը ընդունեց ամերիկյան առաջարկությունը և ստեղծեց Կորեայի վերաբերյալ այսպես կոչված ժամանակավոր հանձնաժողով, որը ծառայում է որպես վարագույր ամերիկյան իմպերիալիստների կողմից Կորեայի ներքին գործերին միջամտելու համար։

1948 թվականի մայիսին ամերիկյան իմպերիալիստները Հարավային Կորեայում սեպարատ կերպով, արյունահեղ տեռորի և ռեպրեսիաների պայմաններում անցկացրին այսպես կոչված ազգային ժողովի կեղծ ընտրություններ, ստեղծեցին մարիոնետային «կառավարություն», որի գլուխ կանգնեցրին Ամերիկայից բերված մոլի ռեակցիոներ Լի Սին Մանին։ Երկրի հարավում հաստատվեց ռեակցիոն, հակաժողովրդական ռեժիմ, սովի, աղքատության, քայքայման և բռնության ռեժիմ։ Ամերիկյան իմպերիալիստները Հարավային Կորեայում վարում են գաղութային քաղաքականություն, կողոպտում երկրի հարստությունները։ Ժողովուրդը տնքում է ծանր հարկերի և կալվածատերերի հարստահարման տակ։

Ամերիկացիների գաղութային քաղաքականության և կորեական ռեակցիայի սանձարձակությունների դեմ հանդես է եկել



Հարավային Կորեայի ժողովուրդը, պայքարել երկրի դեմոկրատական վերամիավորման համար։ Ժողովրդական ապստամբությունները ճնշվել են ամենայն դաժանությամբ։ Բավական է նշել, որ 1948 թվականին լիսինմանական «կառավարությունը» ամերիկացիների ցուցումներով սպանել է 32.000 մարդ, 1949 թ. յոթը ամսում՝ 53.000, իսկ 1950 թվականի սկզբին Հարավային Կորեայի բանտերում պահվում էր 154.000 մարդ։ Չնայած այդ ամենին, օրավուր ընդարձակվում էր պարտիզանական շարժումը ամերիկյան գաղութարարների դեմ։

Այլ է պատկերը Հյուսիսային Կորեայում, որը գրավում է երկրի ամբողջ տերիտորիայի 57 տոկոսը և ուր ապրում են ամբողջ Կորեայի բնակչության երկու հինգերորդ մասը։ Ազատագրումից հետո անցած տարիներում Հյուսիսային Կորեայում տեղի են ունեցել դեմոկրատական խոշոր բարեփոխություններ։ Անցկացվել հողային ռեֆորմ, բռնագրավվել են ճապոնական գաղութարարների, կալվածատերերի և դավաճանների հողերը և ձրիաբար տրվել հողազուրկ և սակավահող գյուղացիներին, լիկվիդացվել է հողատիրության ֆեոդալական սիստեմը։ Ազգայնացվել են արդյունաբերության, տրանսպորտի, կա-

պի և բանկերի կարևորագույն ճյուղերը։ Սովետական Միության անշահախնդիր օգնությամբ կարճ ժամանակամիջոցում վերականգնվեց երկրի հյուսիսային մասի տնտեսությունը, կառուցվեցին նոր հիդրոկայաններ, հանքահորեր, գործարաններ, մեծապես ընդարձակվեցին ցանքային տարածությունները։ Աշխատավոր ժողովուրդը մասնակցում է երկրի կառավարմանը, ստեղծված են ամենալայն պայմաններ աշխատավորների քաղաքական ազատության համար։ Հոյակապ հաջողություններ են ձեռք բերվել կուլտուրայի, աշխատավոր մասսաների նյութական բարեկեցության բարձրացման գործում։

Սակայն Կորեայի արհեստական բաժանումը միաժամանակ արգելակում է երկրի էկոնոմիկայի զարգացմանը։ Հյուսիսային Կորեան—դա արդյունաբերական ռայոն է, հարուստ օգտակար հանածոներով։ Մինչև համաշխարհային երկրորդ պատերազմը նա տալիս էր երկրի մետալուրգիական արդյունաբերության 93 տոկոսը, քիմիականի՝ 86 տոկոսը։ Հարավային Կորեան իրենից ներկայացնում է գյուղատնտեսական ռայոն. նա տալիս էր բրնձի ամբողջ արտադրանքի 70 տոկոսը, գարու՝ 86 և բամբակի՝ 77 տո-



կոսը։ Երկրի բաժանման հետևանքով Հարավային Կորեան չի ստանում էլեկտրաէներգիա, քարածուխ և շատ այլ բաներ, որոնք առատությամբ արտադրվում են Հյուսիսային Կորեայում, իսկ մյուս կողմից Կորեայի հարավը չի կարող տալ հյուսիսի արդյունաբերությանը հումք, բնակչությանը՝ մթերքներ։

Կորեական ժողովուրդը չէր կարող հաշտվել երկրի բաժանման հետ։ 1948 թվականի ապրիլին Կորեայի Աշխատանքային պարտիայի (պարտիայի նախագահ՝ Կիմ Իր Սեն) նախաձեռնությամբ հրավիրվեց Հյուսիսային և Հարավային Կորեայի դեմոկրատական պարտիաների և հասարակական կազմակերպությունների ներկայացուցիչների միացյալ խորհրդակցություն, որը որոշում ընդունեց պայքարել երկրի անդամահատման ամերիկյան պլանի դեմ։ Հետագայում այդ պարտիաներն ու կազմակերպությունները որոշում ընդունեցին ամբողջ երկրում անցկացնել Կորեայի Գերագույն Ժողովրդական Ժողովի ընդհանուր ընտրություններ և հռչակել միասնական դեմոկրատական ռեսպուբլիկա։ Այդ ընտրություններին (1948 թ. օգոստոս) Հյուսիսային Կորեայում մասնակցեցին ընտրողների 99,98 տոկոսը, իսկ Հարավում՝ 77,52 տոկոսը։

Գերագույն Ժողովրդական Ժողովի առաջին սեսիան հռչակեց Կորեան Ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկա, ընդունեց Կոնստիտուցիան և կազմեց միասնական դեմոկրատական կառավարություն՝ Կիմ Իր Սենի գլխավորությամբ։

Սովետական Միությունը կատարելով իր ազատագրական միսիան, 1948 թվականի վերջին իր զորքերը դուրս հանեց Հյուսիսային Կորեայից, առաջինը ճանաչեց Ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկան և դիվանագիտական հարաբերություններ հաստատեց նրա հետ։

Կորեական դեմոկրատական կառավարությունը, որին պաշտպանում է ամբողջ կորեական ժողովուրդը, իր գոյության հենց առաջին օրից վարում է երկրի խաղաղ միավորման քաղաքականությունը։ Այս տարի հունիսի 19-ին, Կորեայի Գերագույն Ժողովրդական ժողովի Նախագահությունը հանդես եկավ երկրի խաղաղ վերամիավորման կոնկրետ առաջարկությամբ։ Սակայն Լի Սին Մանի կլիկը, գործելով ամերիկյան իմպերիալիստների թելադրանքով, պատասխանեց այդ առաջարկությանը պատերազմական գործողություններով։

Հունիսի 25-ին, Հարավային Կորեայի կա-



ռավարության զորքերը հանկարծակի բանդիտական հարձակում գործեցին 38-րդ զուգահեռականի ամբողջ երկարությամբ Հյուսիսային Կորեայի վրա, ներխուժելով նրա տերիտորիան 1—2 կիլոմետր խորությամբ։ Այդ պրովոկացիոն հարձակումը կատարվեց ԱՄՆ-ի կառավարության թելադրանքով, որը նախապատրաստվել էր ամերիկյան օկուպացիոն իշխանությունների կողմից։

Կորեայում ամերիկյան իմպերիալիստների ագրեսիայի նպատակն է՝ զավթել ոչ միայն Հարավային, այլև Հյուսիսային Կորեան, այն դարձնել իրենց գաղութը, թույլ չտալ ստեղծելու կորեական միասնական դեմոկրատական պետություն, բռնի կերպով հաստատել հակաժողովրդական ռեժիմ և Կորեայի տերիտորիան օգտագործել որպես ռազմաստրատեգիական պլացդարմ Հեռավոր Արևելքում։

Ամերիկյան ագրեսիայի նախապատրաստման մասին է խոսում ԱՄՆ-ի կոնգրեսի կողմից ներկայացված զեկուցագիրը, ըստ որի անցյալ տարի ԱՄՆ-ի կառավարությունը Լի Սին Մանի կլիկին է տրամադրել 110 միլիոն դոլարի զենք, ինչպես, օրինակ, 100.000 հրացան, մեծ քանակությամբ հակատանկային հրացաններ, հրանոթներ, ռազմամթ-

թերթ, 79 նավ և այլն։ Մարիոնետային «կառավարության» զորքերը կազմակերպվել ու վարժեցվել են ամերիկյան ռազմական հրահանգիչների կողմից։ Նախապատրաստվող պրովոկացիայի մասին բացահայտ կերպով գրում էին ամերիկյան թերթերը, այդ մասին հայտարարել են ամերիկյան մի շարք պաշտոնական անձինք, ինչպես նաև Լի Սին Մանը։ Կորեայում պատերազմական գործողությունների սկսման նախօրյակին, Տոկիո և Սեուլ ժամանեցին ամերիկյան ագրեսիայի դիրիժյորները՝ ԱՄՆ-ի ռազմական մինիստր Ջոնսոնը, զինված ուժերի գլխավոր շտաբի պետ Բրեդլին և պատերազմի հրձիգ Ջոն Ֆոստեր Դալլեսը։

Այդ բանդիտական հարձակմանը նախորդել էր լիսինմանականների պրովոկացիոն գործողությունները Հյուսիսային Կորեայի սահմանում։ Միայն անցած տարվա ինը ամսում նրանք կատարել են ցամաքի վրա 43 և ծովում՝ 92 հարձակում, չհաշված սահմանի խախտումը ավիացիայի կողմից։ Այդ պրովոկացիոն գործողությունների հետևանքով տուժել են Հյուսիսային Կորեայի 136 գյուղ, 500 ընտանիք մնացել անօթևան, սպանվել 200 խաղաղ բնակիչ և 2500 բնակիչ բռնությամբ տարվել հարավ։



Ամերիկյան ագրեսորների և նրանց գործակալների ավազակային հարձակմանը արժանի հակահարված տվեց Կորեական Ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկայի Ժողովրդական բանակը։ Նա մարտերի հենց առաջին օրը ոչ միայն հետ մղեց Հարավ-Կորեական զորքերի հարձակումը 38-րդ զուգահեռական գծից հարավ, այլև առաջ շարժվեց հարավային ուղղությամբ 10—15 կիլոմետր, գրավելով մի շարք բնակավայրեր (Օնջին, Ենան, Կայսեն քաղաքները և այլն)։

Հետագա օրերում Ժողովրդական բանակի հարձակման տեմպն ուժեղացավ, սկսվեց մարիոնետային զորքերի հետապնդումն ու ջախջախումը Հարավային Կորեայում։ Հունիսի 28-ին, ազատագրվեցին Կորեայի մայրաքաղաքը՝ Սեուլը, Նանխեն քաղաքը և Կիմպո օդանավակայանը։ Հունիսի 25—30-ը Ժողովրդական բանակը առաջ շարժվեց 70—100 կիլոմետր, ազատագրելով ավելի քան 20.000 քառ. կիլոմետր տերիտորիա։ Ազատագրվեց Կանխվադո կղզին, դեսանտ իջեցվեց Կաննին, Սամչոկ, Գամպխո և Պխոան, ուր նրանք միացան թշնամու թիկունքում գործող պարտիզանական ջոկատների հետ։ Պարտիզանները ազատագրեցին գավառա-

յին կենտրոններ Ուրդինը և Ենվոնը. սկըսվեց Խան-գանի (Կան) գետանցումը։

Հունիսի 28-ին, Ժողովրդական բանակի հարվածների տակ խորտակվեց Հարավ-կորեական զորքերի ռազմաճակատը և նրա նահանջը վերածվեց խուճապային փախուստի։ Երբ պարզ դարձավ, որ Լի Սին Մանի տեռորիստական ռեժիմը կործանվում է, ԱՄՆ-ի կառավարությունը դիմեց Կորեայում բացահայտ ռազմական ինտերվենցիայի։

Ամերիկյան ագրեսորները դեն նետեցին վերջին թզաթերևը, որով նրանք մինչ այդ դեռևս փորձում էին ծածկել իրենց ագրեսիվ մտադրությունները։ ԱՄՆ-ի պրեզիդենտ Տրումենը հունիսի 27-ին հայտարարեց, որ ԱՄՆ-ը Հարավային Կորեային օգնություն ցույց կտա ռազմա-ծովային և ռազմա-օդային ուժերով։ Այնինչ, մինչ այդ հայտարարվել էր ,որ Կորեայի գործերին ԱՄՆ-ի միջամտությունը կսահմանափակվի միայն ռազմամթերք ուղարկելով։

ԱՄՆ-ի թելադրանքով շտապ կերպով հրավիրվեց Անվտանգության Խորհրդի նիստը, որը հետին թվով հավանություն տվեց վերջինիս ձեռնարկած ագրեսիվ գործողություններին։ Անվտանգության Խորհուրդը կոպիտ կերպով խախտեց Միավորված Ազգերի կազ-



մակերպության կանոնադրությունը, ըստ որի կարևոր հարցերի վերաբերյալ Անվտանգության Խորհրդի բոլոր որոշումները պետք է ընդունվեն Խորհրդի հինգ մշտական անդամների ձայներով։ Այնինչ, ԱՄՆ-ի ռազմական ինտերվենցիայի վերաբերյալ որոշումը կայացվել է Անվտանգության Խորհրդի երկու անդամների՝ ՍՍՌՄ-ի և Չինաստանի բացակայությամբ։ Հասկանալի է, որ Խորհրդի վերոհիշյալ որոշումը անօրինական է և օրենքի ուժ ունենալ չի կարող։

Շուտով Կորեա ուղարկվեցին ամերիկյան ցամաքային զինված ուժերը, որոնք այժմ ռազմական գործողություններ են կատարում հյուսիս-կորեական զորքերի դեմ։ Ամերիկյան ռազմական ավիացիան բանդիտական հարձակումներ է գործում Հյուսիսային Կորեայի խաղաղ քաղաքների ու գյուղերի վրա։ Հուլիսի 4-ին, ԱՄՆ-ի կառավարությունը պաշտոնապես հայտարարեց, որ բլոկադայի է ենթարկում Կորեայի ծովափը։

Հուլիսի առաջին տասնօրյակում Ժողովրդա-դեմոկրատական ռեսպուբլիկայի Ժողովրդական բանակի զորամասերը շարունակեցին իրենց հարձակողական գործողությունները, ծանր հարվածներ հասցնելով ամերիկյան և լիսինմանական զորքերին։ Ազա-

ազատագրվեցին Սուվոն քաղաքը և համանուն օդանավակայանը, Վոնդյու (Վոնչժու) գավառային կենտրոնը և գավառը, ինչպես նաև Յանպխեն գավառը, Պխենտեկ (Խեյտակու) քաղաքը և այլն։

Ամերիկյան դաշտային շտաբը վերջերս հաղորդել էր ռազմաճակատի հետևյալ գիծը. նա սկսվում է Պխենտեկ քաղաքի մոտից (արևմտյան ծովափ), անցնում արևելք 50 մղոն տարածությամբ դեպի Ինճիո և Չունչժու (Ցյուսյու), ապա գիծը թեքվում է դեպի հյուսիս 37-րդ զուգահեռականի միջով մինչև Չեչոն (Տեյսեպ), իսկ հետո աստիճանաբար իջնում հարավ և դուրս գալիս Իոնդոկ նավահանգստի (արևելյան ծովափ)— 37-րդ և 36-րդ զուգահեռականների միջև։

Ամերիկյան ագրեսորները կորեական ժողովրդի դեմ են օգտագործում ճապոնական «կամավորներին», ջախջախված գոմինդանականներին, անգլիական ու ավստրալիական ռազմա-ծովային և ռազմա-օդային ուժերը։

Սեուլի ազատագրումից հետո, Լի Սին Մանի «կառավարությունը» փախել էր հարավ՝ Տայգեն, իսկ այժմ ըստ հաղորդագրությունների գտնվում է Չոնդյուում։



***

Կորեական ժողովուրդը զենքը ձեռքին պաշտպանում է իր երկիրը ամերիկյան իմպերիալիստների և նրանց գործակալների ռազմական ագրեսիայից, կռվում է անկախ դեմոկրատական միասնական պետության համար։ Սովետական կառավարությունը, որը պահպանում է ամբողջ աշխարհում խաղաղությունն ամրապնդելու քաղաքականությունը և մյուս պետությունների ներքին գործերին չմիջամտելու իր սկզբունքը, մերկացնում է ամերիկյան ինտերվենտներին և պահանջում անվերապահորեն դադարեցնել ամերիկյան ռազմական ինտերվենցիան և ամերիկյան զինված ուժերը դուրս հանել Կորեայից։

Ի պատասխան Կորեայում ամերիկյան իմպերիալիստների ագրեսիվ գործողությունների, ուժեղանում է աշխարհում խաղաղության կողմնակիցների պայքարը խաղաղության համար, որը կձախողի պատերազմի հրձիգների խարդախ մտադրությունները։

# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԿՈՂՄՆԱԿԻՑՆԵՐԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՇԱՐԺՄԱՆ ՎԵՐԵԼՔԸ

### I

*1. ՍՍՌՄ ղեկավար դերը բոլոր դեմոկրատական ազգերի պայքարում՝ հանուն կայուն խաղաղության և անվտանգության, հանուն ժողովուրդների խաղաղ համագործակցության։*

*2. Կոմունիստական պարտիաների առաջատար դերը՝ բոլոր դեմոկրատական ուժերը խաղաղության համար մղվող պայքարում համախմբելու գործում։*

*3. Անգլո-ամերիկյան իմպերիալիզմը անցել է բացահայտ ագրեսիայի և ձգտում է համաշխարհային տիրապետության։*

*4. Խաղաղության համար մղվող պայքարի նոր հաջողությունները։*

*5. Խաղաղության համար համաշխարհային հզոր շարժումը մի նոր հարված է ամերիկյան իմպերիալիստների ագրեսիվ պլաններին։*



*6. Ատոմային զենքն արգելելու վերաբերյալ՝ Ստոկհոլմի Կոչը մի նոր ավանդ է կայուն խաղաղության ամրապնդման և նոր պատերազմի հրձիգների ագրեսիվ պլանների վիժեցման գործում։*

*7. Ատոմային զենքի արգելման կոչի տակ եղած առաջին հարյուր միլիոնավոր ստորագրությունները լուրջ հարված են պատերազմի հրձիգներին և ահեղ նախազգուշացում իմպերիալիստներին։*

*8. Խաղաղության կողմնակիցների շարժման մեջ բնակչության միլիոնավոր խավերի, նոր կազմակերպությունների ներգրավումը խաղաղության համար մարտնչողների սրբազան պարտականությունն է։*

Գրականություն.

*1. Ի. Վ. Ստալին. Գերմանական ազատ երիտասարդության միության կենտրոնական խորհրդին. «Սովետական Հայաստան»-ի 1950 թ. հունիսի 3-ի համարում։*

*2. Ի. Վ. Ստալինի պատասխանը «Սընդեյ Թայմսի» Մոսկվայի թղթակից պ-րն Ալեքսանդր Վերտի հարցերին, «Սովետական Հա-*

*յաստան»-ի 1946 թ. սեպտեմբերի 25-ի համարում։*

*3. ՍՍՌՄ Գերագույն Սովետի Հայտարարությունը՝ ընդունված Միության Սովետի և Ազգությունների Սովետի 1950 թվականի հունիսի 19-ի համատեղ նիստում. «Սովետական Հայաստան»-ի 1950 թ. հունիսի 21-ի համարում։*

*4. Վ. Վ. Կուզնեցովի հաղորդումը ՍՍՌՄ Գերագույն Սովետում խաղաղության կողմնակիցների համաշխարհային կոնգրեսի Մշտական կոմիտեի դելեգացիան ընդունելու մասին, «Սովետական Հայաստան»-ի 1950 թվի հունիսի 21-ի համարում։*

*5. Սովետական ժողովուրդը քվեարկում է խաղաղության օգտին, «Պրավդա»-ի 1950 թ. հունիսի 30-ի համարում, «Սովետական Հայաստան»-ի 1950 թ. հուլիսի 1-ի համարում։*

*6. Խաղաղության հզոր պատվարը՝ «Պրավդա»-ի 1950 թ. հուլիսի 3-ի առաջնորդողը, «Սովետական Հայաստան»-ի հուլիսի 4-ի համարում։*

*II*

Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի և Հայաստանի Կ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի 1950 թվականի հուլիսի 5-ի որոշումը՝ «Հայ-



կական ՍՍՌ կոլխոզներում ցորենի և բամբակի արտադրությունն ավելացնելու, խոզերի և թռչունների գլխաքանակն ավելացնելու և ճանրային անասնաբուծության մթերատվությունը բարձրացնելու միջոցառումների վերաբերյալ» ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1950 թվականի մայիսի 30-ի որոշումը կենսագործելու միջոցառումների մասին»։

*1. ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1950 թվականի մայիսի 30-ի որոշումը՝ Հայկական ռեսպուբլիկայի սոցիալիստական գյուղատնտեսության աննախընթաց վերելքի և աշխատավորության նյութական դրության բարձրացման նկատմամբ սովետական կառավարության և անձամբ ընկեր Ստալինի կողմից ցուցաբերված հոգատարության վառ ապացույցն է։*

*2. Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի և Հայաստանի Կ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի հուլիսի 5-ի որոշումը՝ ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1950 թվի մայիսի 30-ի որոշումը կենսագործելու մասին գործողության ծրագիր է հանդիսանում գյուղատնտեսության հետագա զարգացման, կոլխոզների կազմակերպական-տնտեսական ամրապնդման և աշխատավորության նյութական,*

կուլտուրական մակարդակի էլ ավելի բարձրացման համար մղվող պայքարում։

3. Սոցիալիստական գյուղատնտեսության մեջ գիտության նվաճումների լայն կիրառումը և առաջավորների փորձի մասսայականացումը բարձր բերք ստանալու կարևորագույն պայմանն է։

4. Հացահատիկային ցանքատարածությունների լայնացումը ռեսպուբլիկայի հացի պահանջը սեփական արտադրության միջոցով ապահովելու կարևորագույն պայմանն է։ Կոլխոզի, սովխոզի, ՄՏԿ խնդիրները ցանքատարածությունների լայնացման գործում։

5. Հանրային անասնաբուծության մթերատվության բարձրացումը անասնապահության հետագա զարգացման կարևորագույն խնդիրն է։

Անասնապահության ֆրոնտի աշխատողների խնդիրները հանրային անասունների մթերատվության բարձրացման գործում։

6. Գյուղատնտեսության բոլոր աշխատողների ակտիվ մասնակցությունը սոցիալիստական մրցության մեջ՝ ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1950 թվի մայիսի 30-ի որոշման հաջող կենսագործման գրավականն է։



Գրականություն.

1. Գր. Հարությունյան, հաշվետու զեկուցում Հայաստանի Կ(բ)Պ 14-րդ համագումարում ՀԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքների մասին. (Հայպետհրատ, 1948 թիվ, էջ՝ 40—68)։

2. Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի և Հայաստանի Կ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի 1950 թվականի հուլիսի 5-ի որոշումը. «Սովետական Հայաստան»-ի 1950 թ. հուլիսի 7-ի համարում։

3. Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության նոր, հզոր վերելքի համար. «Սովետական Հայաստան»-ի առաջնորդող հոդվածը հուլիսի 8-ի համարը։

4. Կոլխոզային ու սովխոզային հանրային մթերատու անասնաբուծության զարգացման եռամյա պլանը (1949—1950 թ. թ.). «Սովետական Հայաստան»-ի 1949 թ. ապրիլի 21-ի համարում։

III

**ՍՍՌՄ Ռազմա-Ծովային Նավատորմի օրը՝** սովետական ժողովրդի տոնն է։

1. ՍՍՌՄ ծովային մեծ տերություն է։

2. Ընկեր Ստալինը ՍՍՌՄ Ռազմա-Ծովային Նավատորմի կազմակերպիչն ու ստեղծողն է։

3. Ռազմա-Ծովային Նավատորմի օրը՝ սովետական ժողովրդի տոնն է և մեր մեծ Հայրենիքի ռազմա-ծովային ուժերի հզորության ստուգատեսն է։

4. Ռազմա-Ծովային Նավատորմը՝ սովետական ծովային սահմանների հուսալի պաշտպանն է և ՍՍՌՄ հենարանը խաղաղության և անվտանգության պայքարի համար։

5. Նավատորմին աջակցող կամավոր ընկերության աշխատանքներին ակտիվ մասնակցություն ունենալը՝ սովետական երիտասարդության հայրենասիրական պարտքն է։

Գրականություն.


1. Ի. Վ. Ստալին. ՍՍՌ Միության Զինված Ուժերի Մինիստրի 1946 թ. հուլիսի 28 № 31 Հրամանը, «Սովետական Հայաստան»-ի 1946 թ. հուլիսի 28-ի համարում։

2. Ա. Վասիլևսկի. ՍՍՌ Միության Զինված Ուժերի մինիստրի 1949 թվի հուլիսի 24-ի № 71 հրամանը. «Սովետական Հայաստան»-ի 1949 թ. հուլիսի 24-ի համարում։

3. Մեր Ռազմա-Ծովային հզոր նավատորմը, «Սովետական Հայաստան»-ի 1949 թ. հուլիսի 24-ի առաջնորդող հոդվածը։

# ԿՈՐԵԱ




Մասշտաբ 1:5000000

կմ 50 0 50 100 150 200 կմ

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Ա. ԿՈՍՏԻՆ.— ՀամԿ(բ)Պ տասնըվեցերորդ համագումարը: Հայպետհրատ, 1950 թ., տիրաժ 5.000, 162 էջ:

Բ. Պ. ՎՐՈՆՍԿԻ.— «Ամերիկյան պրելակերպը»: Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի հրատարակություն, 1950 թ., տիրաժ 6.000, 42 էջ:

Ա. Հ. ՉԻԼԻՆԳԱՐՅԱՆ.— Տոհմային աշխատանքը անասնաբուծության մեջ: Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի հրատարակություն, 1950 թ., տիրաժ 6.000, 22 էջ:

Լ. Մ. ԴՈՐՈՍԻՆՍԿԻ.— Բակտերիական պարարտանյութեր: Հայպետհրատ, 1950 թ., տիրաժ 3.000, 45 էջ:

Ա.Լ. ՄԱՆԱՍՅԱՆ.— Հղի կենդանիների խնամքն ու կերակրումը: Հայպետհրատ, 1950 թ., տիրաժ 3.000:

Ս. ՍԱՐԳՍՅԱՆ.— Հացահատիկների յուղատու կուլտուրաների և խոտաբույսերի սորտաշրջանացումը Հայկական ՍՍՌ-ում: Հայպետհրատ, 1950 թ., տիրաժ 1.500, 28 էջ:

---

Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ